

# ԶԻՆՎՈՐԱԿԱՆ ԲԱԼԼԱԴ

Գ. ԱՐՍԿԻ

Նկ. ԱԼԲԵՐՏ ՑԱՐԱԼՅԱՆԻ

Ժողովրդի մեջ ավելի ու ավելի էր մեծանում դժգոհությունը բուրժուական ժամանակավոր կառավարության վարած քաղաքականության նկատմամբ։ Զինվորները ցանկանում էին տուն գնալ, կարոտել էին հարազատներին ու մտերիմներին, ամեն մեկն ուզում էր ցանել իր հողակտորը, սեփական ձեռքերով հավաքել բերքը։

Մի անգամ, զորանոցում պառկած ժամանակ, ես «Մայր Ռուսաստանի երջանկության համար» վերնագրով մի բանաստեղծություն գրեցի, հետո այն կարդացի գնդի միտինգներից մեկում։ Բանաստեղծությունը դուր եկավ զինվորներին։ Որոշ ժամանակ անց ինձ մոտեցան երկու ընկերներ։

— Որտե՞ղ է քո զինվորական բալլադը,— հարցրեց նրանցից մեկը։

— Ահա, այստեղ է, գրպանումս,— պատասխանեցի ես։

— Դե, որ այդպես է, գնանք։

— Ու՞ր։

— Ուղիղ դեպի «Պրավդայի» խմբագրություն։

Մենք խմբագրություն հասանք աշխատանքի թեժ պահին։ Քարտուղարի շուրջը շատ մարդ էր հավաքվել. եկել էին որը նամակով, որը նոթերով։ Վերջապես իմ հերթն էլ հասավ։ Ես ցույց տվեցի թերթիկս։ Աչքի պոչով նայելով թղթին, քարտուղարը գլխով արեց դեպի դուռը.

— Մտեք, այնտեղ ցույց կտաք...

Նա ինչ-որ բան էր ուզում ավելացնել, բայց քարտուղարին ընդհատեցին անհամբեր աշխատակիցները, ռազմաճակատից եկած զինվորները և գործարանային տղաները։

Ես աշխատասենյակ մտա։ Թղթերով ծանրաբեռնված գրասեղանի հետևում նստած էր մի մարդ և, գլուխը մի կողմ թեքած, ինչ-որ բան էր գրում։

— Այդ ի՞նչ է,— սիրալիր հարցրեց նա։

— Բանաստեղծություն... Զինվորական բալլադ,— երկյուղածությամբ ասացի ես՝ թուղթը սեղանին դնելով։

— Նստեցեք խնդրեմ,— ընկերը ցույց տվեց բազմոցը և սկսեց ուշադրությամբ կարդալ իմ բա-

նաստեղծությունը։ Հետո մոտեցավ մեզ։ — Սա մենք կտպագրենք։ Այժմ ասեք, ինչպե՞ս են գործերը ձեր գնդում։

Ես սկսեցի պատմել։

— Ինչպե՞ս է կոչվում ձեր գունդը։

— Պավլովյան։

— Իսկ զինվորների տրամադրությունն ինչպե՞ս է։

Երբ ես ասացի, որ զինվորները դեմ են պատերազմին, նա սկսեց խոսել և արագ-արագ քայլել սենյակում։

— Հարկավոր է պատերազմին վերջ տալ և որքան կարելի է շուտ։ Բանակը մահու չափ հոգնել է, նրա համար արդեն զզվելի է այդ սպանդը...

— Դուք եղե՞լ եք ռազմաճակատում, — հարցրեց նա՝ ձեռքը ուսիս դնելով։






— Այո, — պատասխանեցի ես, — ռազմաճակատում դավաճանում են զինվորներին։ Արկեր չկան, մթերք...

— Այդպես է, այդպես։ Այդ մասին ասվում է նաև ձեր բանաստեղծության մեջ։ — Նա նորից նայեց իմ թղթին. — Ոչ։ Մեզ պատերազմ պետք չէ... Բանակը կարող է և պետք է զենքը ուղղի իր ճընշողների՝ կալվածատերերի ու կապիտալիստների դեմ։ Պավլովյան գունդը այժմ էլ, ինչպես փետրվարյան օրերին, պետք է մեր հեղափոխական բանակի առաջին շարքերում լինի։

Ես դուրս եկա այդ մարդու ասածից խորապես ցնցված. նա հոգու խորքից, մեծ բարեկամի սրտամոտությամբ էր խոսում մեզ՝ զինվորներիս համար նվիրական գործերի մասին։

Քարտուղարը ինձ տեսնելով հարցրեց.

— Հը՞, բանաստեղծությունդ ի՞նչ եղավ։

— Ընկերը հավանեց, խոստացավ, որ կտպագրվի։

Քարտուղարը ժպտաց.

— Եթե Վլադիմիր Իլյիչն ասաց, ուրեմն բանաստեղծությունը կտպվի։

— Լենի՞նը, — ուրախ հուզմունքով բացականչեցի ես։

— Նա ինքը։

Փողոցում ինձ անհամբերությամբ սպասում էին բարեկամներս։ Ես շտապ-շտապ նրանց տեղեկացրի այն բոլորի մասին, ինչ ինձ հետ պատահել էր խմբագրությունում։

Զինվորները սկսեցին ինձ հանդիմանել.

— Ա՜խ, դու, խենթուկ։ Հարկավոր էր ավելի շատ պատմել մեր կյանքի մասին։ Նա պետք է ամեն ինչ իմանա։

— Նա առանց այդ էլ ամեն ինչ լավ գիտե. — նկատեցի ես։

Իսկ երեք օր անց իմ բանաստեղծությունը երևաց «Պրավդա» թերթում։

Դա 1917 թվականի հունիսի 16-ին էր։

*Թարգմ. ՌՈՒԲԵՆ ՌՈՒԲԻՆՅԱՆԻ*

# ՅԱՓՆՋԱՎՈՐՆԵՐԸ

(Հատված նովելից)

ԳԱՐԵԳԻՆ ԲԵՍ

Նկ. ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ

Մի քանի ամիս է, ինչ ժողովրդական Կոմիսարների Խորհրդի պարետն եմ, և առաջին անգամ եմ այստեղ յափնջավոր մարդկանց տեսնում, գլխներին էլ՝ սրածայր ու ծոպավոր փափախ։ Այսպես հագնվում էին մարդիկ, որոնց դեմ պայքարում էինք, և որոնք էլ մեր դեմ էին պայքարում, մարդիկ, որոնք պարտությունից գազազած, դեռ շարունակում էին իրենց բանդիտական հարձակումները Հայաստանի գավառներում։

Մոտեցավ ինձ և շատ էր պատասխանել։ ← 

Մոտքերիս թելը կտրեց յափնջավորներից բարձրահասակը, որ վստահ քայլերով մոտեցավ պատուհանին ու.

— Մյասնիկյանին ենք ուզում։

Լուռ նայեցի նրան ու իր ընկերներին։ Բեղավոր մարդիկ էին, կարմրած, արնակալած աչքերով։

— Ի՞նչ գործով,— կամաց հարցրի ես։

— Մյասնիկյանին ենք ուզում,— անուշադիր թողնելով հարցս, կրկնեց յափնջավորը։

— Նա զբաղված է։ Գործի անունն ասեք, ես կօգնեմ ձեզ։

Բարձրահասակը թերեց գլուխը և դարձավ ընկերներին.

— Տղե՛րք, Մյասնիկյանն զբաղված է, ընդունել չի կարող։ Ի՞նչ անենք, հը՞։

Յափնջավորները մի քանի վայրկյան տարակուսած նայեցին իրար։

Տհաճ տպավորություն թողեցին վրաս այդ մարդիկ։ Գոնե ժամանակավորապես նրանցից ազատվելու համար ստիպված եղա ասել.

— Աշխատանքի ժամը վերջացել է, եկեք վաղը։

Բարձրահասակը աչքի տակով նայեց ինձ և իսկույն դեպի ընկերները դարձավ.

— Պարետն ասում է, որ աշխատանքի ժամը վերջացել է։ Նշանակի, Մյասնիկյանը, որտեղ որ է, դուրս կգա տուն գնալու։ Ի՞նչ եք կարծում, էստեղ չսպասե՞նք նրան։

—Սպասենք,— միաբերան ասացին ընկերները։

— Դե, նստեք,— կարգադրեց բարձրահասակը։

Եվ երեք յափնջավորները քաշվեցին ու նստեցին պատի երկայնքով դրված նստարանին։

Ինչ-որ անհանգստություն պաշարեց ինձ։ Ինչպե՞ս ազատվեի այդ անկոչ հյուրերից, չգիտեի։

Ես մոտեցա յափնջավորներին։

— Ընկերնե՛ր,— մեղմ սկսեցի ես,— բա չե՞ք մտածում, որ Մյասնիկյանն էլ մարդ է, հանգիստ է պետք նրան։ Վաղը որ գաք, ի՞նչ կլինի։

Թող այսօր գնային, հեռանային այդ անախորժ մարդիկ, իսկ վաղը մի բան կմտածեի։

— Էգուց էլ կարելի է, ինչի չէ,— անտարբեր խոսեց բարձրահասակը, հավանաբար երեքի մեջ գլխավորը։— Բայց որ եկել ենք՝ օրը ինչի՞ կորցնենք։

Մնում էր գնալ և ամեն ինչի մասին զեկուցել Ալեքսանդր Ֆյոդորովիչին։

Յափնջավորները երևի զգացին, որ իրենց համառությունն ազդեց վրաս։

Նրանք ավելի հարմար նստեցին տեղները։ Հենց այդ պահին էր, որ նրանց յափնջիների՝ բիչ դեպի ներքև ընկած փեշերի տակից աչքիս ընկան գոտիները խրած մաուզերները։

Ինչպե՞ս, նրանք եկել էին Ժողովրդական Կոմիսարների Խորհուրդ, ուզում էին տեսնել նրա նախագահին և հետները մաուզե՞ր էին բերել։

Արդյոք նրանք զգացի՞ն, որ մի պահ այլայլվեցի։

Ոչինչ ցույց չտալով և արտաքուստ հանգիստ ձևանալով, ասացի.

—Սպասեք այստեղ, հիմա կզեկուցեմ ընկեր Մյասնիկյանին։

— Բա ի՞նչպես,— ուսերը վեր քաշեց բարձրահասակը,— կսպասենք, մինչև նրան չտեսնենք՝ էստեղից գնացողը չենք։

Արագ բարձրացա վեր ու շնչասպառ ընկա Մյասնիկյանի առանձնասենյակը.

— Ալեքսանդր Ֆյոդորովիչ...

Մյասնիկյանը հանգիստ ու լուռ լսեց ինձ, ապա ժպտացող աչքերը դարձրեց վրաս։

— Գնացեք ու մարդկանց ուղարկեք ինձ մոտ։

— Նրանք, Ալեքսանդր Ֆյոդորովիչ, մաուզերիստներ են։

— Այդպես մաուզերներով էլ ներս թողեք,— ընդհատեց խոսքս Մյասնիկյանը։

Դուրս գալով նախագահի առանձնասենյակից, անմիջապես ինձ մոտ կանչեցի պարետատան տղաներին, ինչ որ հարկն էր՝ կարգադրեցի, ում որ հարկն էր՝ կանգնեցրի նրանց։

Յափնջավորները հանգիստ դիտում էին այն իրարանցումը, որ առաջացել էր իրենց պատճառով։





Քիչ հետո մոտենալով նրանց, ասացի.

— Գնանք, ընկեր Մյասնիկյանն սպասում է ձեզ:

Բարձրահասակը, հպարտ այն մտքից, որ անցավ իր խոսքը, ոտքի կանգնեց, փափախը ավելի թեքեց գլխին, յափնջին ուղղեց ուսերին, ավելի հարմար տեղավորեց գոտին խրած մաուզերը, սակայն այնպես, որ ես անպայման նկատեմ այդ արարողությունը, որի ժամանակ նա, ի դեպ, աչքի տակով նայում էր ինձ, և գլխով արեց ընկերներին.

— Վեր կացեք, Մյասնիկյանն սպասում է մեզ:

Ընկերներն էլ բարձրացան տեղներից և ճիշտ նույն շարժումներով կարգի բերեցին իրենց:

Մի քանի րոպե անց, մենք արդեն Մյասնիկյանի առանձնասենյակում էինք:

— Բարև ձեզ, ընկեր Մյասնիկյան,— ներս անցնելով, դասը սերտած աշակերտի պես ձայնեցին յափնջավորները:

— Բարև,— հանգիստ պատասխանեց Ալեքսանդր Ֆյոդորովիչը: Ապա հենվելով աթոռի հենակին,

Դողաց գրպանումս ատրճանակ բռնած ձեռքս: Ալեքսանդր Ֆյոդորովիչը նայեց ինձ. հանգիստ, սիրելիս, վրդովվելու հարկ չկա, կարծես ասում էր նրա հայացքը:

Յափնջավորները ձգվեցին տեղներում, ապա զինվորական քայլերով մի քիչ առաջ անցան:

Պատուհանից թափանցող արևի ճառագայթների տակ ավելի փայլեցին նրանց մաուզերների պատյանները:

Բավական էր թեթև հազայի, և դրսում, դռան ետևում սպասող տղաներն իսկույն կգրոհեին ներս:

Իսկ Մյասնիկյանը, Ալեքսանդր Ֆյոդորովիչը, հանգիստ, առանց հուզվելու, դեմքին թեթև անդորր, շարունակում էր նայել դիմացը գտնվող մարդկանց:

Յափնջավորները ձեռքները դեպի մաուզերները տարան: Կոկորդս չորացավ:





մի պահ նայեց դիմացը գտնվող մարդկանց, և ասաց.— Ի՞նչ կա, լսում եմ:

Ես կանգնած էի Մյասնիկյանի կողքին և հայացքս չէի կտրում այցելուներից:

Բարձրահասակը աչքի տակով խեթ նայեց ինձ ու խոսքն ուղղեց դեպի Ալեքսանդր Ֆյոդորովիչը.

— Ընկեր Մյասնիկյան,— կմկմաց նա:

— Պարետը մեզ չի խանգարի,— հասկանալով նրա միտքը, վրա բերեց Մյասնիկյանը,— ձեզ ազատ զգացեք:

Յափնջավորները, ասես ինչ-որ հրամանով, ներքին մի պայմանավորվածությամբ, քիչ ետ գնացին, հանեցին յափնջիներն ու փափախները, և շպրտեցին դեպի գահավորակը:

Եվ դարձյալ անվրդով միայն Մյասնիկյանն էր. ասես այդ մարդիկ ձեռքները դեպի գրպաններն են տարել, որ այնտեղից հանեն հին, պատռված թղթերի վրա գրված դիմումներ և դնեն նրա գրասեղանի վրա:

Մաուզերները դեռ պատյանների մեջ էին, մատս




50 տարեճանակի ձգանի վրա, հազս էլ՝ կոկորդումս:

Իսկ Մյասնիկյանի դեմքին ժպիտ կար, ժպիտ այն պահին, երբ գոտիներից կարող էին հանվել մաուզերները և...

Յունկերները մի քայլ էլ առաջ անցան, հանեցին պատյանավորված մաուզերները և, մեկնելով առաջ... դրին Ալեքսանդր Ֆյոդորովիչի սեղանին:

Ձգանի վրայից հեռացավ մատս, կոկորդումս սպասող հազը վայրկենապես չքացավ:

Այդ պահին սենյակում հավանաբար առաջվա պես միայն Մյասնիկյանն էր խաղաղ: Նրա կկոցված աչքերի մեջ դարձյալ փայլում էր ժպիտը:

— Վերցրեք մեր մաուզերները, ընկեր Մյասնիկյան,— վերջապես խոսեց բարձրահասակը:— Էլ մենք մաուզերիստներ չենք: Հրաժարվում ենք նրանցից: Չգիտենք ինչո՞ւ գնացինք նրանց ետևից, բայց գիտենք, թե ինչու ենք եկել էստեղ: Աշխատանք տվեք մեզ, ազնիվ մարդու կյանքով ենք ուզում ապրել:

Առանձնասենյակում լռություն տիրեց: Լսում էի, թե ինչպես էին բաբախում յափնջավորների սրտերը: Քիչ առաջ նրանց արնակալած թվացող աչքերը ասես հանգստացան, և նրանց մեջ երևաց մանկական ազնվություն: Ինչքա՞ն գեղեցիկ էին այդ պահին նրանց երկար բեղերը:

Ալեքսանդր Ֆյոդորովիչը մի քիչ էլ նայեց նրանց, հետո ոտքի կանգնեց, դուրս եկավ գրասեղանի ետևից, մի քանի քայլ արեց սենյակում, կանգ առավ, նորից դիտեց մարդկանց, ապա մոտեցավ նրանց և, ձեռքը մերթ մեկի, մերթ մյուսի ուսին դնելով, խոսեց իր կարկաչուն ձայնով.

— Կլինի այն, ինչ ցանկանում եք, սիրելիներս: Իսկ հիմա, տես թե ի՛նչ. հագեք ձեր յափնջիները, դրեք ձեր փափախները և վերցրեք ձեր մաուզերները: Այստեղից ուղիղ կգնաք Արտակարգ Հանձնաժողովի նախագահի մոտ: Կասեք, որ ես եմ ուղարկել: Զենքը կհանձնեք նրան, զենքի հարցով նա է զբաղվում: Իմ անունից կխնդրեք, որ մտածի ձեզ աշխատանքով ապահովելու մասին:

Երբ յափնջավորներին ուղեկցում էի դուրս, առանձնասենյակի դռան ետևում և դեպի ներքև տանող աստիճանների վրա կանգնած տղաները զարմացած նայում էին ինձ, որ այդպես հանգիստ քայլում էի այդ մարդկանց հետ: Հայացքով հասկացնելով, թե ամեն ինչ հետո կպատմեմ, յափնջավորներին հասցրի շենքի դուռը և հրաժեշտ տվի նրանց:

Վերադարձա Ալեքսանդր Ֆյոդորովիչի մոտ: Նա մտախոհ քայլում էր սենյակում: Ինձ տեսնելուն պես, կանգ առավ և սկսեց բարձրաձայն ծիծաղել: Վարակիչ ծիծաղը, որ ուժեղ անձրևի պես հորդեց առանձնասենյակում, համակեց նաև ինձ, ու ես էլ սկսեցի ծիծաղել, չիմանալով սակայն, թե ինչու:

— Ձեռքներդ հեռացրե՛ք ատրճանակից,— ծիծաղի միջից խոսեց Ալեքսանդր Ֆյոդորովիչը,— կրցավի, մեղք եք:

Իսկապես, ձեռքս դեռ գտնվում էր գրպանումս, և ես դեռ շարունակում էի բռնած պահել ատրճանակը:

Շփոթմունքից կարմրելով, ձեռքս դուրս քաշեցի:

Մյասնիկյանը մի քիչ էլ ծիծաղեց, հետո ասես թրով կտրեց ծիծաղը, դեպի գրասեղանը շարժվեց և թաղվեց թղթերի մեջ:

Դեմքի վրա փռված էր անբաժանելի անդորրություն, աչքերի մեջ նույն փայլն էր:

# ԱՌԱՎՈՏ

ՎՌԱՄ ՀՈՎՍԵՓՅԱՆ

Հանդն ու սարը գրկեց արփին,
Զարթնեց, ծփաց արտը դեղին.
Հազար հացթուխ, հազար դարբին
Բռնեց ճամփան գործատեղի:

Խոհարարը գոգնոց կապեց,
Սավառնակը հասավ ամպին,
Հազար նավի ծովը ծափեց,
Հազար գնացք հնաց ճամփին:

Այգեպանը շոյեց վազին,
Դրեց մի կողմ բահը ձեռքի,
Ու վազերը նրան ասին.
—Այգիները ծով են բերքի:

Արագիլն էլ կանչեց կրկին.
—Հե՜յ, զարթնեք դուք, ոստան ու գյուղ:—
Ու լուռ ժպտաց իր մայրիկին
Արև աչքով մանկիկը թուխ:

Մի տղա էլ գիրքը թերթեց՝
Սրտում հույզի հազար թրթիռ,
Մտքով Մարսի նավը կերտեց,
Միտքը սուրաց, ինչպես հրթիռ:




*ԶԱՎԵՆ ՍԱՐԳՍՅԱՆ*

Մեր գյուղում մի ընտանիք կա, որ մի հոգուց է բաղկացած: Դա իմ հորաքույր Նազանն է՝ ակոսանման կնճիռներ ունեցող դեմքով ու կորամեջք: Գեղեցիկ տուն ունի նա, ցանկապատի փոխարեն՝ մասրապատված այգի ու աշխարհի չափ մեծ վիշտ:

Ամուսինը չկա, զավակներ չունի, ապրում է միայնակ՝ ինքն իր հետ, իր խոհերով տարված: Երբեմն ծաղկեփունջը ձեռքին նա քայլերն ուղղում է դեպի սարալանջը, ուր մի շիրմաքար կա՝ վրան քանդակված հրացան: Այնտեղ թաղված է նրա ամուսինը, որը զինվոր է եղել ու զոհվել մեծ գոտեմարտում:

Ես արդեն յոթերորդ դասարանի աշակերտ էի, դպրոցի պատմության խմբակի ակտիվ անդամ և ընկերներիս նման ինձ համարում էի գաղտնիքներ լուսաբանող պատմաբանի հետախույզ: Դասերից հետո, հատկապես կիրակի օրերին, ընկերներիս հետ շրջում էի գյուղի շրջակայքում կամ լեռներում, որտեղ մի ժամանակ, հորաքրոջս պատմելով, կռիվներ են եղել, փնտրում դատարկ պարկուճներ կամ երկաթի կտորներ ու պայուսակս դնելով վերադառնում էի տուն: Երբեմն մայրս նեղանում էր, որ տունը երկաթի կտորներով եմ լցրել, սակայն ինձ ու ընկերներիս դրանք անհրաժեշտ էին: Մենք՝ պատմության խմբակի անդամներս, որոշել էինք գրել մեր գյուղի պատմությունը: Մեզ անհրաժեշտ էին տվյալներ ու իրեղեն ապացույցներ:

Գյուղի ծեր մարդկանց պատմությունները նույն դեպքերի մասին հակասական էին ու հեքիաթանման: Մենք դրանք ուշադիր լսում էինք, գրի առնում, հետո մեր պատմության դասատուի հետ մշակում: Հեքիաթը ջնջվում էր, երևակայականը դուրս նետվում: Մնում էր իրականը, որը շատ բանով թերի էր ու կցկտուր: Անհրաժեշտ էր նոր տվյալներ հավաքել, անթերի ու իրական պատմություն գրել:

Մեր գյուղում մի հասակավոր մարդ կար՝ անունը Արմենակ: Գյուղացիները նրան Հենակ Արմո էին ասում, որովհետև նրա մի ոտքը կտրված էր ու հենակներով էր ման գալիս: Զնայած պատկառելի հասակին՝ աշխույժ էր ու կատակասեր: Հաճախ գալիս էր հորաքրոջս մոտ, ինչպես ինքն էր ասում, «դեսից-դենից խոսելու և օր անցկացնելու»:

Մի անգամ, օգտվելով հորաքրոջս բացակայությունից, քաշվելով մոտեցա նրան և հարցրի, թե երբ է կտրվել ոտքը: Նա, ինչպես ինձ թվաց, փոքրինչ մռայլվեց: Երկար ժամանակ լուռ մտածում էր, հետո վերցրեց հենակները, ոտքի կանգնեց ու շշնջաց.

— Նազանին հարցրու, ասա, որ սնդուկն էլ ցույց տա:

Ա՛յ քեզ հանելո՜ւկ: Ի՞նչ կապ կա՞ր Հենակ Արմոյի ու հորաքրոջս սնդուկի միջև: Եվ, վերջիվերջո, այդ սնդուկ-հնությունը ինչպե՞ս էր վրիպել իմ ուշադրությունից:

Սնդուկ կոչվածը պարզապես անհարթ փայտից պատրաստված մի արկղ էր՝ տարիների ընթացքում մաշված ու սևացած, տարիների հետքը վրան դրոշմված: Հորաքույրս սնդուկը դրել էր իր մահճակալի տակ ու շոր գցել վրան: Ես միշտ կարծել էի, թե այնտեղ են պահվում տարիների ընթացքում խնայած նրա փողերը:

Հորաքույրս ինձ շատ էր սիրում, ուստի չմերժեց խնդրանքս և, դողդողացող ձեռքերով, բաց արեց սնդուկը:

Ես ակնապիշ նրան էի նայում:

Այնտեղ, շորի մեջ խնամքով փաթաթված, սովորական մի մանգաղ կար և մի մեծ դանակ: Նկատելով իմ զարմանքը, նա խորը շնչեց, ապա ինձ նստեցրեց իր կողքին և բառերը հատ-հատ ընտրելով, սկսեց իր կյանքի պատմությունը:

* * *

Կոնաձև երդիկներով, կաթոցից ու ծխից սևացած գերաններով մի քանի տասնյակ տներ, կարկատաններից խայտաբղետ գույն ստացած հագուստներով ու տրեխներով հող մշակող մարդիկ,




թոնիր, աթարի կծու ծխից արցունքոտված կանանց աչքեր ու վազվզող բոբիկ երեխաներ, գյուղի ծայրին գմբեթավոր եկեղեցի, տների առաջ աթարի բուրգ, դպրոցն ու դասը՝ երազանք, ծիծաղն ու բժշկությունը՝ զարմանք:

Ահա մեր գյուղի անցյալը:

Հորաքույրս ծնվել ու մեծացել է այդ գյուղում: Մանկության տարիներին վազվզել ու խաղացել է հարևանների երեխաների հետ՝ չհասկանալով, որ աշխարհը լի է դառնությամբ ու աշխարհի նման դառն է նաև իր մանկությունը: Տասը տարեկան հասակից սկսել է ծնողների հետ միասին մշակել Լեռան լանջին կպած մի ափ քարքարոտ հողակտորը: Հետո ամուսնացել է, ցանկացել տուն-տեղ դնել, բայց աշխարհում ավեր ու կոտորած է սկսվել, ու ամուսինը մանգաղը հանձնելով կնոջը, մեկնել է պատերազմ:

Լաց է եղել Նազանը, մի կտոր հացի համար խանձվել արևից ու կարոտով սպասել ամուսնու վերադարձին:

Անցել են տարիներ, վերադարձել է ամուսինը՝ գլխարկին կարմիր աստղ կպցրած և նույն օրը զոհվել: Արմոն հեռվից տեսել է, թե ինչպես ծըլպտըված մեկը՝ բավական նման հարևան գյուղացի դաշնակ Վաղոյին, կրակել է նրա կրծքին ու փախել: Նրան չեն կարողացել բռնել: Արմոյի հետապնդումները անարդյունք են անցել: Մի քանի օր հետո հետապնդվող որսն է բռնել որսորդին ու գլորել քարաժայռից: Այդ օրվանից Արմոն մնացել է միտանի:

Վշտացել է հորաքույրս, լցվել վրեժխնդրությամբ և տան մեծ դանակը վերցնելով կես գիշերին կտրել է նրա ճանապարհը:

Տեսնելով հորաքրոջս, դաշնակ Վաղոն ծաղրել է նրա հանդգնությունը և ցանկացել պատյանից հանել ատրճանակը, սակայն մի ցատկումով հորաքույրս ձեռքին բռնած դանակը խրել է նրա կուրծքը և անհետացել խավարում:

Այնուհետև նա սգացել է ամուսնու մահը ու որոշել ապրել միայնակ՝ իր վշտերի ու խոհերի հետ: Որպես անցած օրերի հիշատակ նա իր հետ վերցըրել է ամուսնու թողած մանգաղը և մեծ դանակը, որով լուծել էր հոգում ծովացած վրեժը:

* * *

Պատմության խմբակի հերթական պարապմունքի ժամանակ ես պատմեցի հորաքրոջս կյանքի մասին: Պատմելիս հուզվում էի, խառնում բառերը, երբեմն նախադասությունները անկապ էին ստացվում, սակայն ոչ ոք ինձ չէր ընդհատում: Հուզվել էին նաև ընկերներս: Հորաքույր Նազանի կյանքի պատմությունը եզակի չէր, այն մեր գյուղի անցյալի պատմությունն էր, հազարավոր հորաքույրների կյանքի դառն պատմությունը:

Խմբակը որոշեց հորաքույր Նազանի այգու մշակությունը վերցնել իր վրա, միաժամանակ խնդրել նրան՝ դպրոցում կազմակերպված պատմության անկյուն-թանգարանին նվիրելու հին սնդուկը ու նրա պարունակությունը:

Հորաքույր Նազանը այժմ էլ կենդանի է, սակայն առաջվա նման մենակ չէ: Այժմ նա ունի կարմիր վզկապավոր բազմաթիվ թոռնիկներ: Դրանք պիոներներն են, որոնք հոգ են տանում նրա մասին ու խնամում նրա այգին: Առաջվա պես նա շալը ուսերին գցած, հաճախ բարձրանում է դպրոցի աստիճաններով մինչև երրորդ հարկ, բաց է անում սենյակներից մեկի դուռը, որի վրա մեծ տառերով գրված է՝ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԹԱՆԳԱՐԱՆ, և երկա՛ր-երկա՛ր կանգնում անկյուններից մեկում: Այստեղ, հնամենի սնդուկի մեջ դրված են անմոռաց իրերը: Անշունչ այդ իրերը նրա պաշտամունքն են ու կործանված երիտասարդության անխոս վկաները:

Դպրոցից տուն վերադառնալիս հորաքույր Նազանը չի շտապում. նա դանդաղ անցնում է գյուղի փողոցներով՝ մեկ-մեկ նայելով նորաշեն տներին: «Ե՞րբ կառուցեցին այդ տները, դպրոցը, ակումբը, հիվանդանոցը, ո՞ւր կորան մարդկանց շորերի կարկատանները ու ծակ տրեխները: Ասում են՝ նավի մեջ նստած մարդիկ պետք է լուսին գնան: Ճի՞շտ է, թե՞... Չէ, ճիշտ կլինի, սրանք ամեն ինչ կանեն»,— ինքնիրեն խորհրդածում է հորաքույր Նազանը ու ցանկանում տուն մտնել, սակայն նրան շրջապատում են մի խումբ պիոներներ: Պիոներները... նրանք, որ պատմություն են գրում ու մեծերի հետ պայքարում, որպեսզի այլևս չլինեն միայնակ ապրողներ, արցունքոտ աչքեր, հին սնդուկ ու նրա մեջ պահված անցյալի դառն հիշատակներ:

Նկ. ՌՈԲԵՐՏ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ






Պատանի ընթերցող, եթե փորձես բաց անել մոլդավական ժողովրդական երգերի ժողովածուն, ապա առաջին իսկ պատահական էջում դու կկարդաս. «Խաղողի կանաչ տերևը» կամ «Նուրբ տերևներով խաղողի վազը...»

Այսպիսի սկիզբ ունեն ժողովրդական բազմաթիվ երգեր։ Հերոսական բալլադներում և լեգենդներում, տխուր դոյնաներում մոլդավացիները իրենց հայրենիքը անվանում են խաղողի երկիր։ Դու խաղողի ողկույզ և տերև կտեսնես հին գորգերի վրա ու ձեռագիր գրքերի մանրանկարներում։ Վերջապես, դու խաղողի ողկույզ կտեսնես նաև Մոլդավական ՍՍՀ-ի պետական գերբի վրա, և դա պատահական չէ. խաղողը հանրապետության գլխավոր հարստությունն է։ Մեր երկրի խաղողի այգիների մեկ երրորդ մասը պատկանում է Մոլդավիային։ Այդ հանրապետությունը, որը Սովետական Միության ընդհանուր տերիտորիայի 15 հազարերորդական մասն է կազմում, խաղողագործության կարևոր շրջաններից մեկն է ամբողջ աշխարհում։

# ԽԱՂՈՂԻ ԵՐԿԻՐԸ

## ՀՈՒԼԻՍԻՆ՝ ԽԱՂՈՂ

Փողոց-ծառուղիներ... Եվ ամենուր խաղողի վազեր, ցուցանակներ: Յուրաքանչյուր փողոց իր անունն ունի: Կաբերնե, Խաղողների թագուհի, Ռարա նյագրե, Համբուրգյան մուսկատ, Ռկացիտելի, Ջաուս...

Ավելի քան երկուսուկես հազար խաղողի տեսակ կա այդ կանաչ քաղաքում: Դրանք այստեղ են հավաքվել աշխարհի բոլոր ծայրերից, որտեղ խաղող է աճում: Դա մեր երկրում ամենամեծ և աշխարհում խոշորագույն խաղողի կոլեկցիաներից մեկն է, որ հավաքել է Մոլդավիայի այգեգործության, խաղողագործության և գինեգործության ինստիտուտը: Ինչո՞ւ:

Իհարկե, դա միայն կոլեկցիաների նկատմամբ ունեցած սիրուց չէ: Գիտնականները ուշադիր հետևում են «նորաբնակներին», թե ինչպես են նրանք այստեղ ապրում, ինչպես են ձմեռում, ինչպես են ծաղկում, փոշոտվում և պտղավորվում: Այստեղ ստեղծվում են նաև խաղողի նոր տեսակներ, որոնց մեջ դնում են բոլոր վազերի լավ հատկությունները:

Դու, իհարկե, գիտես, որ խաղողը ուտում են աշնանը: Բայց ցանկալի է այն ուտել նաև ամռանը: Առաջ ամառվա խաղողը աճում էր ջերմոցների ապակե գմբեթի տակ: Բայց այդ բերքը թանկ էր նստում և քիչ էր լինում: Գիտնականները շատ տարիներ աշխատեցին, որպեսզի ստեղծեն խաղողի այնպիսի տեսակ, որը բերք տա ամառը: Այժմ հուլիսի 15-ից մինչև հոկտեմբերի 15-ը թարմ խաղող է մատակարարվում:



Քիշինյով. Լենինի անվան հրապարակը

## ՀԱՋՎԱԳՑՈՒՏ ՄԱՍՆԱԳԻՏՈՒԹՅԱՆ ՎԱԽՃԱՆԸ

— Էհ, դժբախտություն, դժբախտություն, հիվանդացել է Տերինտե պապը, հիմա մենք լրիվ կկորչենք...— ողբում էր բրիգադիրը՝ ասես ոչ թե Տերինտե պապը, այլ ինքն էր հիվանդացել:

Պատճառն այն էր, որ Տերինտեին ոչ ոք չէր կարող փոխարինել: Նա պատվաստող էր, այն երեք վարպետներից մեկը, որոնց վրա հենվում էր կոլտնտեսությունը: Բոլորն էլ գտնում էին, որ

պատվաստման գործը ժառանգական է, որ դրա համար պահանջվում են հմուտ ձեռքեր: Բայց այդպես էր միայն 15 տարի առաջ: Այժմ արդեն պատվաստողների պակասի մասին դու ոչ մի տեղ չես լսի: Ուզում եք այցելեք «Բիրուինցա» կոլտնտեսությունը, որը խաղողագործության խոշորագույն տնտեսություններից մեկն է, ոչ միայն Մոլդավիայում, այլև Սովետական Միությունում:

Կոժուլիանա գյուղը, որտեղ գտնըվում է այդ կոլտնտեսությունը, դեռ հնուց համարվել է ժառանգական խաղողագործների գյուղ: Շատ տարիներ առաջ, այստեղ կարող էիր տեսնել խաղողի գաճաճ վազերի հազվադեպ փնջեր, որ մագըլցում էին լանջն ի վեր: Դա այսպես կոչված «հիբրիդ» էր, դիմացկուն, բայց քիչ բերքատու և մանր, սև պտուղներով:

Այժմ «Բիրուինցայում» (մոլդավերեն այս բառը նշանակում է՝ հաղթանակ) այլևս չես տեսնի «հիբրիդների» փոքրիկ հողաբաժիններ: Լանջերին տարածվել են խաղողի անծայրածիր այգիներ:

Պատվաստի հսկայական արհեստանոցում կանգնած են հաստոցները: Մեքենաները իրենք են կատարում պատվաստը, իրենք են տնկում:



Քիշինևի Ազատության հրապարակը

## ՎԱՐԴԵՐԻ ՀՈՎԻՏԸ

Վարդերը ծաղկում են մայիսին, և այդ ժամանակ հովիտը վեր է ածվում կախարդական մի թագավորության: Վարդի թմրեցնող, մի քիչ քաղցր բույրը բռնում է ամբողջ շրջակայքը: Բավական է մի փոքրիկ քամի, որպեսզի ծաղիկների թագուհու հրաշալի բույրը տարածվի հեռո՜ւ-հեռո՜ւ: Թվում է, թե այն իր բույրով կարող է լցնել ամբողջ Մոլդավիան: Բայց մայիսին վարդով հիանալու ժամանակ չկա: Ծաղկաքաղը տևում է 25 օր, իսկ հետո յուրաքանչյուր հազար վարդ վերածվում է մեկ կաթիլ վարդի յուղի: Միայն մեկ կաթիլի: Պատկերացրեք, թե ինչ հոտավետ կլինի այն, եթե նրանում խտացված է 1000 հատ անուշաբույր վարդ: Վարդը քմահաճ է և չի կարող աճել ցածրադիր վայրերում: Ցարական Ռուսաստանում վարդի յուղ չէին արտադրում: Այն ներմուծում էին արտասահմանից՝ փոխարենը վճարելով ոսկի: Եվ ահա 1940 թվականին Չարի հովտում հիմնվեցին ծաղիկների թագուհու առաջին պլանտացիաները: Այժմ մենք ունենք մեր վարդի յուղը:

Բայց Մոլդավիայի բնությունը դուր եկավ ոչ միայն վարդին: Այստեղ աճում են նաև զանազան դեղաբույսեր, ծաղկում են իրիսն ու սպիտակ ակացիան... Եվ հետո այդ բոլորը վերածվում են եթերայուղի, որ այնպես անհրաժեշտ է և բժշկությանը, և պարֆյումերիային:

## ԳՈՐԾ ԵՎ ԵՐԱԶ

«Մենք ուզում ենք զարդարել ու գեղեցկացնել մեր երկիրը: Իսկ որքան երկար ենք մենք մտածել, թե արդյո՞ք մեզ մոտ կաճեն ուրիշ երկրներից բերված բույսերը»:

Եվ թռան նամակներն ամենուր...

Դա երեք տարի առաջ էր, իսկ այսօր Իգնացեի գյուղի պատանի բնասերները կապված են պատանի բնասերների 150 կայանների հետ: Առաջինը արձագանքեց Կարելիան: Այնտեղից ուղարկեցին հերբարիումներ: Պատանի բնասերները բաց արեցին արկղիկները և տեսան հետաքրքիր մի աշխարհ: Առաջինը փոքրիկ տոպրակով



Քիշինևի Կոմերիտմիության անվան զբոսայգին

ժամանեցին ծովափշի սերմերը: Նրանց դուր եկավ մոլդավական հողը, իսկ պատանի բնասերներին դուր եկավ ինքը՝ բույսը: Ծովափուշը լավացնում է հողը, հարըստացնում այն: Հարուստ է վիտամիններով, նույնիսկ օժտված է բուժիչ հատկություններով: Եվ պատանի բնասերները երազում են այն օրը, երբ մացառներով կզարդարվեն ձորակներն ու հեղեղատները, փողոցներն ու ճանապարհները:

Իսկ երբ հերթը հասավ թզին, երեխաները նույնիսկ չուզեցին փորձել. չէ՞ որ թուզը մերձարևադարձային բույս է: Բայց այնուամենայնիվ փորձեցին. գուցե կընտելանա՞: Եթե ամեն բան հաջող անցնի, հանրապետությունը կունենա ևս մեկ օգտակար բույս: Իսկ դրա համար կարելի է չարչարվել:

Առաջին տնկիները չորացան. ձմեռը շատ ցուրտ էր: Բայց պատանի բնասերները ելքը գտան: Այնպես արին, որ թզի ճյուղերը աճեցին ոչ թե ուղղահայաց, այլ փռվեցին հողի վրա: Այդպես նրանց կարելի է ծածկել, պահպանել ցրտից: Եվ շուտով ստացվեց առաջին բերքը, առաջին երեսուն կիլոգրամ թուզը ուղարկեցին ցուցահանդես՝ Մոսկվա և Քիշինև:

Դեռ մի հյուրին չդիմավորած՝ գալիս էր մյուսը: Ուսսուրիական լեռնա-տայգային փորձակայանից ուղարկեցին ճապոնական բալ: Արտաքնապես անբարետես ծառ է, գաճաճ, ավելի շուտ թփի է նման: Բայց չի վախենում ոչ մի հիվանդությունից, հեշտությամբ դիմանում է քառասուն աստիճան ցըրտին և բերք է տալիս: Պտուղը, ճիշտ է, մերինից փոքր է, բայց ավելի համեղ ու վիտամիններով հարուստ: Սկսեցին հոգ տանել, և բալը ապրեց Մոլդավիայում:

Մի օր էլ Կրասնոդարից երեխաներին ուղարկեցին խոտաբույսի սերմեր և մի գրություն՝ «Շատ սննդարար է, հատկապես օգտակար է մատղաշների համար»: Ցանեցին սերմերը և սպասածից ավելի քան 70 տոննա խոտ ստացան: Բայց կարելի է տարեկան նաև երկու բերք ստանալ: Կոլտընտեսության նախագահը պատանի բնասերների համար առանձնացրեց մեկ հեկտար հող:

Փորձեք, երեխաներ:

Եվ երեխաները փորձեցին: Գործին հաջորդեց երազանքը. լավ կլինի Ոգնացեիում ստեղծել բուսաբանական այգի: Դրա համար անհրաժեշտ է հող, շատ հող: Իսկ այդպիսի գործի համար հող միշտ էլ կգտնվի: Չէ՞ որ երեխաներին կոլտնտեսությունում իսկապես հավատում են:

— Ահա այնտեղ, ընկուզենու պուրակում հողամաս կա: Վատ հողամաս չէ, հինգ հեկտար կլինի: Նվիրում ենք ձեզ:

Պյոտր Ֆյոդորովիչը՝ բուսաբանության դասատուն, արդեն եղել էր այնտեղ: Նա կանխատեսել էր արդեն այն այգին, որ երազում էին պատանի բնասերները: Այգին շուտով պատրաստ կլինի:

Լուսանկարները՝ ԶԱՎԵՆ ԲՇՏԻԿՅԱՆԻ




ԿՈՍՏԱՆԴԻՆ ԿՈՆԴՐՅԱ

Միտյան ու Կոլյան մի ամայի տեղ գնդակ էին խաղում: Հանկարծ Կոլյան ինչքան ուժ ուներ. հարվածեց: Գնդակը թռավ ընկավ կողքի բակը, որը շրջապատված էր բարձր ցանկապատով:

Կոլյան ցանկապատի վրայով թռավ բակը. բայց մի գամփռ՝ շղթան վզին, ձգվեց դեպի նա և ըսկըսեց հաչել:

— Հիմա ո՞նց անեմ,— ասաց վշտացած Կոլյան:

— Ես քեզ չէ՞ի ասում, որ գնդակին այդքան թափով չխփես,— հանդիմանեց նրան Միտյան:— Հիմա տեսնու՞մ ես:

Նա ցանկապատի երկարությամբ մի քանի քայլ արեց և հանկարծ հիշեց, որ ինքը կինո պետք է գնա:

— Ես ի՞նչ կարող եմ անել,— ուսերը վեր քաշեց Միտյան.— եղբայրս էլ հիմա ինձ է սպասում: Ես պետք է գնամ: Իսկ դու այստեղից չհեռանաս՝ գնդակն ափսոս է:

Երբ Կոլյան մնաց մենակ, բակում հայտնվեց մի աղջիկ:

— Մի քիչ հեռու խաղացեք,— ասաց աղջիկը:— Ես դասերս եմ պատրաստում և ժամանակ չունեմ բակ դուրս գալու, որ գնդակը ձեզ վերադարձնեմ:

Նա թփերի արանքում փնտրեց, գնդակը գտավ ու գնաց դեպի Կոլյան:

— Հապա երկրորդ տղան ու՞ր է,— հարցրեց աղջիկը:— Կարծեմ դուք երկուսով էիք:

— Միտյան գնաց կինո,— պատասխանեց Կոլյան կիսաձայն:

— Այդ-պե՜-ս,— զարմացավ աղջիկը.— իսկ ես կարծում էի, թե դուք ընկերներ եք:

Ինչո՞ւ ես ուշանում։

Չեմ պատասխանում։

— Դասդ պատասխանիր։

Պատասխանում եմ, բայց «2» ստանում.

— Ինչո՞ւ չես պատրաստել դասդ։

Չեմ պատասխանում։

— Դու ամենաանպարտաճանաչ աշակերտն ես։

Մրթմրթում եմ, քանի որ դա ճիշտ է. ամեն օր դասերից ուշանում եմ, օրագիրս «2»-ներով ու «3»-ներով լցված է, վարքս էլ՝ «1»։

— Նստի՛ր։

Նստում եմ։

Մի օր էլ ընկեր Սեդան հայտարարում է, որ ես անպարտաճանաչների թագավորն եմ, և այդպես էլ անունս կնքվում է։

Իսկ Արայիկին նա նշանակել է դասարանի ավագ, որպես ամենապարտաճանաչի։ Մենք էլ՝ անպարտաճանաչներս, Արայիկին սկսում ենք անվանել պարտաճանաչների թագավոր։ Բայց ծաղրանքով, որովհետև, իսկապես որ, նա բոլորովին թագավորի տեսք չունի. լղար-մղար տղա է։ Ուղղակի, որովհետև նա ամենապարտաճանաչն է, ընկեր Սեդան նրան նշանակել է ավագ։ Այսինքն, ավելի շուտ ոչ թե ընկեր Սեդան է նշանակել, այլ աղջիկներն են ընտրել։ Բայց ո՞վ էր նրան բանի տեղ դնում որ, միայն աղջիկները... Իսկ ես, երբ իմ անպարտաճանաչների շքախմբով շրջապատված, դասամիջոցներին շրջում էի միջանցքում, նույնիսկ բարձր դասարանի տղաներն էլ հարգանքով մի կողմ էին քաշվում ու ինձ ճանապարհ տալիս։ Փոքր չէի. երրորդ դասարանում էի, երկու տարի էլ մնացել էի, տասներկու տարիս լրանում էր, և արդեն այնպիսի՜ մկաններ ունեի որ...

Մինչև «իշխանության» փոխվելը այդպես թագավորում էինք ես ու Արայիկը։ Նա իր պարտաճանաչների վրա էր իշխում, ես իմ՝ անպարտաճանաչների։ Նա ինձ արհամարհում էր, որովհետև ես ամենաանպարտաճանաչն էի։ Ես էլ նրան էի արհամարհում, որովհետև նա ամենապարտաճանաչն էր։ Եվ ուղղակի զարմանում էի, որ աղջիկներն այդպես խենթանում էին նրա համար։ Մտածում էի. «Մա՞րդ էլ այդպիսի լղպոր տղայի համար խենթանա»...

Դասարանը փաստորեն բաժանվել էր երկու հակառակորդ խմբերի՝ պարտաճանաչների ու անպարտաճանաչների։ Ընկեր Սեդան չգիտեր ինչ աներ։ Ամեն կերպ աշխատում էր ինձ ու Արայիկին հաշտեցնել։ Դասամիջոցներին մեզ բոլորիս դուրս էր անում դասարանից և սկսում էր փսփսալ իր ավագի հետ։ Նրանց փսփսալուց հետո, Արայիկը մոտենում էր ինձ ու առաջարկում.

— Ուզու՞մ ես միասին պարապենք։

Ես մերժում էի։ Այդ էր մնացել պակաս, որ այդ լղպորի հետ պարապեի։

— Դու քո պարտաճանաչների հետ պարապիր...

— Հա՜, հա՜, հա՜, հա՜ հա՜...

Հետո անպարտաճանաչներս շրջապատում էին ինձ, ու մենք դուրս էինք գալիս միջանցք շրջելու։

Գուցե և հաշտվեի ու պարապեի Արայիկի հետ, բայց դա նշանակում էր՝ ոչ մի օր չուշանալ դասից, միայն «4»-եր ու «5»-եր ստանալ, չշարժվել, չխոսել, աղջիկների մազերից չքաշե՜լ... մի խոսքով, դառնալ խաբարբզանի մեկը։ Մինչդեռ աշխարհում դրանից միլիոն անգամ ավելի մեծ հաճույքներ կային. ֆուտբոլ, հեծանիվ, կինոնկարներ, կռի՜վ... վերջապես ամենամեծ հաճույքը՝ պարապ-սարապ թրև գալ ու երազել ավտո ունենալու մասին...



# Անպարտա

ՀԱՆՐԻ ՋԱՐՅԱՆ

Այս բոլորը դեռ ոչինչ. ես էլի կհաշտվեի Արայիկի հետ, եթե այդ աղջիկներն այդպես չխենթանային նրանով...

Եվ այդպես. Արայիկը շարունակ մոտենում է ինձ ու առաջարկում՝ միասին պարապել, ես մերժում եմ։

Ու նորից.

— Ինչո՞ւ ես ուշանում։

Չեմ պատասխանում։

— Դասդ պատասխանիր։

Պատասխանում եմ, բայց «2» ստանում։

— Ծնողիդ կկանչես։

— Շատ լավ։

— Նստիր:

Նստում եմ:

Հետո մայրս գնում է դպրոց, գալիս տուն, գանգատվում է հորս, ու հայրս նորից սկսում է իր խրատները:

— Ինչո՞ւ ես ուշանում:

— Էլ չեմ ուշանա:



# ճանաչը

Նկ. ԼԻԴԱ ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ

— Գոնե դասերդ պարապիր:

— Պարապում եմ:

— Բա ինչո՞ւ է ուսուցչուհին բողոքում:

— Ինձ չի սիրում:

Հայրս մեղմանում է.

— Իսկ դու այնպես արա, որ սիրի:

Ի՞նչ պատասխանեմ, միևնույն է, նա ինձ չի հասկանա, և լռում եմ:

Հայրս ավելի է մեղմանում.

— Չե՞ս կարող փոխվել, դառնալ դասարանի ամենապարտաճանաչ աշակերտը:

Ուսերս եմ վեր քաշում: Կարծում է հե՜շտ բան է ինձ համար պարտաճանաչ դառնալը:

Հայրս նորից է հարցնում.

— Ասա: Չե՞ս կարող փոխվել:

— Կարող եմ, հայրիկ, բայց դժվար է,—ասում եմ:

— Գիտե՜մ, որ դժվար է,—համաձայնում է հայրս:— Բայց պետք է աշխատես, պետք է ցանկանաս:

Մտածում եմ նրա ասածի մասին... բայց ոչինչ չեմ հասկանում...

Հետո նա հոգնում է խրատներ կարդալուց և ընկղմում է թերթ կարդալ: Ես գալիս եմ այն եզրակացության, որ ճիշտը ես եմ. «Մարդը երբեք էլ չի կարող փոխվել», և վազում եմ բակ...

Իսկ դպրոցում շարունակում եմ «2»-ներ ստանալ, դասերից ուշանում եմ: Դասամիջոցներին իմ անպարտաճանաչներով շրջապատված շրջում եմ միջանցքում և քաշում եմ աղջիկների մազերից, այն աղջիկների, որոնք այդքա՜ն հիացած են իրենց ավագով... Դասերից հետո ֆուտբո՜լ, հեծանի՜վ... որ մեկը ասես...

Իսկ այդ ավագը բոլորից շուտ մտնում է դասարան, կատարում է՛ իր պարտականությունները, ընկեր Սեդայից «5»-եր ու գովեստներ է ստանում, իսկ աղջիկներից՝ հիացական հայացքներ: Դասամիջոցներին փսփսում է ընկեր Սեդայի հետ: Դասերից հետո էլ... Դե, դասերից հետո Արայիկը ի՞նչ կարող է անել; Պարզ չի՞. պիտի գնա տուն ու ամբողջ օրը պարապի:

* * *

Մի օր էլ ընկեր Սեդան դարձյալ փսփսում է Արայիկի հետ: Սպասում եմ, որ այդ լղպոր ավագը հիմա ուր որ է կմոտենա ինձ ու նորից կառաջարկի միասին պարապել: Պատրաստվում եմ մերժել նրան: Բայց զարմանալի բան. Արայիկը չի մոտենում ինձ: Մտածում եմ, որ, երևի, ընկեր Սեդան ու նա ինձանից ձեռք են քաշել, որոշել են հանգիստ թողնել ինձ: Նայում եմ Արայիկին: Նա էլ ինձ է նայում. ինչ-որ խորամանկ կայծեր եմ տեսնում նրա կլորիկ, սև-սև աչքերում... Չեմ կարողանում հասկանալ, թե ինչու է նա այդքան երջանիկ: Հա՛. «Երևի ընկեր Սեդան որոշել է ինձ դպրոցից դուրս անել»...

Հնչում է զանգը: Բոլորս վեր ենք կենում: Ես էլ եմ վեր կենում. բայց ընկեր Սեդան ասում է, որ ես մնամ, ինձ հետ գործ ունի: Նորից նայում եմ Արայիկին: Նա էլ ինձ է նայում: Դարձյալ խորամանկ կայծեր են խաղում նրա աչքերում...

Մտածում եմ. «Այդ է որ կա: Ուզում են ինձ դպրոցից հեռացնել»...

Երբ բոլորը գնում են տուն, ընկեր Սեդան կանչում է ինձ իր մոտ, հրամայում է, որ նստեմ: Նստում եմ: Եվ ասում է, որ... ի՞նչ եք կարծում, ի՞նչ է ասում... Ասում է, որ ինձ նշանակում է... դասարանի... ավագ...

Ավա՜ղ... Դասարանի ավագ: Բայց ինձանից ի՞նչ ավագ...

— Դե, համաձա՞յն ես,— հարցնում է ընկեր Սեդան:

Ուզում եմ մերժել. հաստա՛տ ուզում եմ մերժել, բայց անկախ ինձանից ասում եմ.

— Այո՛:

Հետո ընկեր Սեդան բացատրում է ինձ մանրամասնորեն ավագի պարտականությունները, ու ես խենթի նման դուրս եմ վազում դասարանից:

Արագ-արագ գնում եմ տուն:

Ավա՜գ... Ուրեմն վաղվանից ես եմ դասարանի ավագը: Ա՛յ թե հայրիկը կուրախանա: Նա հիմա կհավատա, որ ես կփոխվեմ: Հիմա՛ եմ հասկանում նրա խոսքերի իմաստը... Եվ, իսկապես, ամեն քայլը գցելիս, զգում եմ, որ փոխվում եմ: Աստիճանները բարձրանալիս մի բանի մասին եմ մտածում միայն. ինչպես անեմ, որ առավոտյան շուտ հասնեմ դպրոց՝ բոլորից շուտ: Չէ՞ որ ես դասարանի ավագն եմ:

Մտնում եմ տուն: Պատմում եմ մորս, որ ինձ ավագ են նշանակել: Մորս աչքերը թրջվում են. համբուրու՛մ է ինձ, համբուրու՛մ: Հետո գալիս է հայրս: Մայրս ինքն է առաջինը պատմում, որ ինձ ավագ են նշանակել: Հայրս սկզբում ապշում է, հետո զարկում է ուսիս և ասում.

— Կեցցե՛ս, տղաս, կեցցե՛ս...

Մայրս համբուրու՛մ է ինձ, համբուրու՛մ...

Հայրս՝ կեցցե՛ս, տղաս, կեցցե՛ս...

* * *

Վեր եմ թռչում ժամացույցի ականջ ծակող ձայնից: Լվացվում եմ, հագնվում և շտապում փողոց: Ամեն ինչ ուրիշ տեսակ է թվում աչքիս. երկինքը՝ ավելի կապույտ, արևը՝ ավելի ջերմ, ծառերը՝ ավելի կանաչ:

Հասնում եմ դպրոց: Դռնապանն ապշած ինձ է նայում.

— Ինչո՞ւ ես այսքան շուտ եկել:

Չեմ պատասխանում:

— Բարի լույս:

Պատասխանում եմ, բայց՝ գլխով միայն և աստիճաններով վազում եմ վերև: Մոտենում եմ մեր դասարանին: Բաց եմ անում դուռը... Հը՛:

Դեռ ոչ ոք չի եկել... Նստում եմ մի փոքր: Հետո սթափվում եմ, հիշում եմ ընկեր Սեդայի պատվերներն ու վեր եմ կենում: Սկսում եմ պարտականություննե՛րս կատարել:

Դռան ճռոց: Շուռ եմ գալիս. Արայիկն է: Առաջինը Արայի՛կն է ներս մտնում: Ժպտում ենք իրար, երկա՛ր, բարեկամաբար...



## Ամառ

ՀԵՆՐԻԿ ԱՐԹԵՆՅԱՆ

Քաղաքն արած անցուղի,
Աչքում մաղը ցնցղուղի՝
Արեգակը ոսկեշող
Մաղմղում է ոսկե շոգ...
Հողի մաշկը ճաքճքող
Երազում է պաղ մի ցող,
Փշատենին հարսնացած
Խոնարհում է վարսն արծաթ,
Ականջօղերից լուսնային
Կախում գինդերը նարինջ...
Տանձն է կարմրում կախովի.
Ողկույզներից խաղողի
Կանաչ գույնն է չքանում,
Հատիկներն են շիկանում...
Հրազդանն է նիհարում,
Ջուրն ի՞նչ եղավ, չի պարում.
Արարատն էլ մարմարյա
Կապտագույն է համարյա...
Սոսն ու Արան ճամբարում
Թարմություն են ամբարում,
Մինչդեռ ծույլիկ Ծատուրը,
Վրան փակել տան դուռը,
Ջի էլ ուզում շնչել օդ,
Ա՜խ, այսպե՛ս էլ ալարկոտ...

Նկ. ԷԴՎԱՐԴ ԱՐԱՋՅԱՆԻ




Դ՚ԷՐՎԻԼԻ

Առաջին գլուխ

## ՔԱՐԱՆՁԱՎԻ ԲՆԱԿԻՉՆԵՐԸ

Ցուրտ ու ամպամած մի օր, լայնահուն գետի ափին նստել էր մի պատանի: Նրանից քիչ հեռու, լեռան լանջին երևում էր գազանի երախի նման մի անցք, որը տանում էր դեպի քարանձավի խորքը: Այդ անցքով էին միայն ելումուտ անում խավար քարանձավի բնակիչները, նրա միջոցով ստանում լույս և օդ, այստեղից էր դուրս գալիս օջախի ծուխը, որովհետև քարայրում զոր ու գիշեր վառվում էր հավերժական կրակը: Ինը տարի առաջ այստեղ էր ծնվել պատանին, բայց նրանից դեռ շատ վաղուց այստեղ էին ապրել նրա նախահայրերի նախահայրերը:

Քարանձավի շեմին երևաց բարձրահասակ, ջլապինդ, այրված և կնճռոտված դեմքով մի ծերունի: Նա բացականչեց.

— Կրե՛կ...

«Կրեկ» նշանակում էր Թռչնորս: Եվ պատահական չէր, որ պատանին այդպիսի անուն էր ստացել: Դեռ վաղ մանկությունից նա աչքի էր ընկել ճարպկությամբ և թռչունների գիշերային որսորդությամբ:

— Այստեղ եմ, Տոհմավագ, ի՞նչ ես հրամայում:

— Մանկիկս,— ասաց ծերունին,— մերոնք վաղուց որսի են գնացել և երևի շատ ուշ վերադառնան, իսկ սրածայր քարերն ու դանակները արդեն վերջացել են:

— Ի՞նչ ես կարգադրում:

— Հավաքիր եղբայրներիդ, գնանք սպիտակ ժայռի կողմերը, ասում են՝ սրածայր քարեր այնտեղ շատ կան:

— Լսում եմ,— պատասխանեց Կրեկը և գլուխը խոնարհեց:

Կրեկը լայն, այրված մաշկով դեմք ուներ: Ճակատին փռված էր մոխրոտ ու կեղտոտ խառնաշաղ մազերի խուրձը: Չնայած արտաքինով նա գեղեցիկ չէր, բայց աչքերը բոցավառ էին ու խելացի, իսկ մարմինը ճկուն էր և արագաշարժ:

Քիչ անց փետափի իջավ ծերունին: Նրան հետևում էր վայրենի երեխաների մի հսկա խումբ: Կրեկի նման բոլորը հագել էին գազանների մորթիներից կարված հագուստներ: Նրանցից ամենամեծը տասնհինգ տարեկան Գենն էր, որը հայտնի էր որպես հիանալի ձկնորս, և երկարականջ Ռյուգը, որը շան լսողություն և հոտառություն ուներ:

Վառվող օջախի մոտ որպես պահապան մնացել էր ամենափոքր եղբայրը՝ Օժոն: Նա ծնկաչոք անվերջ փչում էր հավերժական կրակը:

Տոհմավագի առաջնորդությամբ երեխաները գնում էին դեպի սպիտակ ժայռերը և չնայած քաղցած էին ու հոգնաբեկ, բայց անխոս ու համ-

Նկ. ԱՐՄԻՆԵ ԿԱԼԵՆՑԻ



տատ քայլում էին անձրևի և ցուրտ քամու հանդիման: Կրեկը գնում էր ծերունու հետևից, երազելով այն ժամանակները, երբ ինքը իսկական մեծ որսորդ դարձած՝ կկրեր ծանր զենքեր:

Արշավախումբը բավական երկար ճանապարհ էր անցել, երբ վերջապես Տոհմավագը ձեռքը վեր բարձրացրեց.

— Թոռնիկներս, ժայռի տակ հարմար ու չոր տեղեր կան, նստեք և բացեք պարենի պարկերը:

Երեխաներից ոմանք նստեցին կոճղերին, մյուսներն ուղղակի փռվեցին ավազի վրա: Իհարկե, ամենից հարմար և չոր տեղ հատկացվեց ծերունուն:

Կրեկը պարկից փոքրիկ մի օձ հանեց: Այդպիսի համեղ պատառով նա պարտավոր էր Տոհմավագին հյուրասիրել, բայց ծերունին հրաժարվեց.

— Դո՛ւ կեր, սիրելիս, ես արմատիքով էլ յոլա կգնամ:

Ասաց ու սկսեց զանազան բույսերի արմատներ ծամել:

Երեխաները դեռ չէին վերջացրել իրենց համեստ նախաճաշը, երբ հյուսիսային կողմից չարագուշակ մռնչոց լսվեց: Ձայնը հեռվից էր, բայց այնքան ուժեղ, որ բոլորին սարսափեցրեց: Վախեցավ նույնիսկ Կրեկը, որ ամենից քաջն էր: Տոհմավագը ազդանշան տվեց, և երեխաները իսկույն թաքնըվեցին հողաթմբի հետևը, իսկ ինքը կանգնած մնաց բարձր ժայռի վրա:

— Տոհմավա՜գ — բացականչեց Կրեկը, — մեր կյանքին վտանգ է սպառնում, քեզ երբեք մենակ թողնել չեմ կարող: Եթե հարձակվողները մարդակերներ են կամ հզոր գազաններ, ապա ես էլ քեզ հետ կմարտնչեմ և կթափեմ նրանց փորը:

Մինչ այդ, մռնչոցը ավելի ու ավելի էր սաստկանում:

— Տեսողությունդ սուր է, Կրեկ, ի՞նչ ես տեսնում, — ասաց Տոհմավագը:

— Գետի մեջտեղում հսկայական բան է լողում, իսկ թե ինչ է, առայժմ չեմ կարող գուշակել:

— Իսկ դու՞ք ինչ եք տեսնում, տղաներ, — դիմեց ծերունին թմբի հետևը թաքնվածներին, — ապա, Ույուգ, լարի՛ր տեսողությունդ:

— Ալիքները սառցի մի մեծ կտոր են բերում, որի վրա սև գույնի կենդանի եմ տեսնում, ավելի մեծ, քան ցուլը, — պատասխանեց Ույուգը:

— Տոհմավա՜գ, Տոհմավա՜գ, — բացականչեց Գեյը, — այստեղից ամեն ինչ պարզ երևում է, սառցի վրա մի կենդանի չէ, երկուսն են, շարժվում են... ամբողջ սառույցը կարմիր գույն է ստացել:

Շուտով ամեն ինչ պարզվեց: Հսկայական սառցի կտորի վրա կանգնել էր մի մամոնտ, որի հետևի ոտքերը խորը թաղվել էին ջրի մեջ: Հսկա կենդանին հազիվ էր իրեն պահում: Սպիտակ ժանիքներով զարդարված կնճիթը վեր էր բարձրացել, որտեղից արյան շատրվան էր խփում: Մամոնտի կողքին ընկած էր անկենդան ռնգեղջյուրը: Քիչ առաջ սառցի վրա տեղի էր ունեցել կյանքի և մահվան գոտեմարտ: Եվ ահա, երբ սառցի հսկա կտորը մոտեցավ գետափին, հուժկու մամոնտը վերջին մռնչոցն արձակեց և ընկավ տապալված թշնամու վրա:

Այդ ժամանակ լողացող սառույցը նորից ընկավ գետի կատաղի հոսանքի մեջ՝ իր հետ տանելով ահավոր գազանների դիակները:

— Երբ արշավի դուրս եկանք, Օժոն սրտանց մեզ նախանձում էր, — փսփսաց Կրեկը Ույուգի ականջին, — իսկ հիմա եթե լսի, երևի կուրախանա, որ չտեսավ սարսափելի գազաններին:

Ույուգը գլուխը բացասաբար օրորեց.

# ԹԵ ԻՆՉՊԵՍ ԲԱՐԵԿԱՄԱՑԱՆ ՄԱՐԴՆ ՈՒ ՊԵՐԿՈՒՆԱՍԸ

(Հ ե ք ի ա թ)

Պ. ՑՎԻՐԿԱ

Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Լինում է, չի լինում, մի մարդ է լինում: Էս մարդը սովորում է հյուսնի արհեստը և որոշում է գնալ աշխարհը ման գալու, բախտ որոնելու: Եվ մի օր ճամփա է ընկնում: Գնում է ճանապարհով, գնում և հասնում է մի ուրիշ ճամփորդի: Հասնում է նրան և հարցնում.

— Դու ո՞վ ես, մարդ, և ու՞ր ես գնում:

— Ես Պերկունասն եմ, որոտի ու կայծակի աստվածը, գնում եմ աշխարհ տեսնելու, — պատասխանում է նա:

Եվ այդպես, ընկերանում են, զրույց անելով գնում և հասնում են երրորդ ճամփորդին: Սա էլ իրեն սատանա է անվանում:

— Չէ, ընդհակառակը, Օժոն անվախ է և շատ կախսոտ։

... Անցել էր արդեն չորս օր, ինչ ծերունի Տոհմավագը և երեխաները վերադարձել էին քարանձավ, իսկ որսորդները՝ նրանց հայրերն ու պապերը, դեռևս չէին երևում։ Ի՞նչ էր պատահել։ Գուցե անանցանելի անտառներում կորցրե՞լ էին ճանապարհը։ Բայց Տոհմավագը, մայրերն ու երեխաները վաղուց ի վեր սովորել էին հայրերի բացակայությանը։ Տանը մնացողները առաջին օրերին մի քիչ ուտելիք ունեին. դեռևս մնացել էր եղջերուի կիսահատած բուդը, օձանման կենդանիների փշերն ու ոսկրերը, բայց հետո, երբ այլևս ուտելու ոչինչ չկար, սկսեցին հագուստների համար հավաքած մորթիները բերել և ապուր եփել։

Մարդկային պատմության այդ վաղ ժամանակներում նախամարդիկ դեռևս գաղափար չունեին ընտանի կենդանիների մասին։ Այն ժամանակ պատկերացում չունեին նաև ցորենի, գարու մասին։ Խեղճ Կրեկը երբեք չէր կերել եփած հաց կամ ձավարից պատրաստած համեղ ապուրներ։

Քարանձավը, որտեղ պատսպարվում էր պատանի Կրեկի ցեղը, լայն էր և ընդարձակ։ Կենտրոնական մասում հավաքված էր տաք մոխրի մի մեծ կույտ, որտեղ մարդիկ պառկում և վայելում էին իրենց հանգիստը։ Բնության ձեռքով շինված սրահի մեջտեղում վառվում էր փոքրիկ խարույկը, որը նախամարդու անբաժան և ամենալավ բարեկամն էր։ Կրակը հալածում էր ցրտին, վախեցնում գիշատիչներին։ Բայց նախամարդկանց համար կար մի թշնամի, որի դիմաց անզոր էր և կրակը։ Այդ ահավոր թշնամին, որը մինչև այսօր էլ գոյություն ունի որոշ երկրներում, կոչվում է քաղց։

Արդեն վերջանում էր օրը։ Ոչ ոք այլևս հույս չուներ, թե որսորդները կվերադառնան։ Տոհմավագը հրամայեց ամեն ինչ թողնել և անտառ գնալ՝ կեր հայթայթելու։

Բոլորն անխոս ենթարկվեցին խստապահանջ ծերունուն։ Կանայք զենքեր վերցրին, երեխաները՝ դանակներ։ Խարույկի մոտ որպես պահապան մնաց Կրեկը։ Նա պարտավոր էր կրակը վառ պահել մինչև փոքրիկ եղբոր՝ Օժոյի վերադարձը։

(Շարունակելի)



Երեքով շարունակում են ճանապարհը։ Երեկոյան սովածանում են և կանգ են առնում անտառում։ Սատանան ասում է.

— Ես ուժեղ եմ և արագաշարժ, հիմա ձեզ համար հաց ու միս կճարեմ։

— Իսկ ես լավ ճաշ կպատրաստեմ,— ասում է հյուսնը։

— Ես էլ կսկսեմ կայծակ ու որոտ տեղալ, անմիջապես անտառի բոլոր գազաններին կփախցնեմ, և մենք կկարողանանք հանգիստ քնել,— ասում է Պերկունասը։

Ինչպես որոշեցին, այնպես էլ արին. սատանան բերում է հաց ու միս, հյուսնը համով տապակում է, իսկ Պերկունասը քշում է անտառի բոլոր չար գազաններին։ Նրանք այդպես միասին ապրում են մի ամբողջ ամիս։

Բայց ահա մի անգամ հյուսնը ասում է.

— Գիտեք ինչ, եկեք մեզ համար տուն կառու-

ցենք և ապրենք ինչպես ապրում են բոլոր մարդիկ:

Այդ առաջարկությունը բոլորին դուր եկավ և, բարեկամներով անցան գործի: Սատանան ու Պերկունասը ծառերը արմատահան անելով կրում-բերում էին, իսկ հյուսնը տաշում էր: Շուտով նրանց տունը պատրաստ էր:

— Ահա թե ինչ,— նորից ասում է հյուսնը,— հիմա մեր գլխի վերևում կտուր կա, հարկավոր է հացի մասին էլ հոգ տանել:

Ասելն ու անելը մեկ է լինում: Ընտրում են մի մարգագետին: Հյուսնը արագ մի արոր է շինում, լծում է իր երկու բարեկամին և սկսում են հողը վարել: Ոչ կտրված ծառերի կոճղերը դիմացան նրանց, ոչ էլ ծառարմատները. մի ժամվա ընթացքում ամբողջ տեղամասը վարեցին պրծան: Հետո հյուսնը մի ցաքան է պատրաստում և նրանով տեղամասը սկսում են ցաքանել:

Սատանան սերմեր է ճարում: Ցանում են տարեկան, ցորեն, սիսեռ, իսկ մնացած տեղամասում՝ շաղգամ:

Երբ շաղգամը աճեց, սկսեց հասնել, ընկերները նկատեցին, որ ինչ-որ մեկը շաղգամ է գողանում: Պայմանավորվում են, որ հերթով յուրաքանչյուր գիշեր գնան և հերթապահեն: Առաջին գիշերը հերթապահում է սատանան: Հանկարծ նկատում է, որ մոտենում է գողը և սկսում է շաղգամ հանել: Մի ակնթարթում սատանան ցատկում և ուզում է գողին բռնել, իսկ գողը այնպես է խփում սատանային, որ կոտոշավորն հազիվ է կենդանի մնում:

Առավոտյան հյուսնը և Պերկունասը վեր են կենում, գալիս շաղգամը նայելու: Տեսնում են, որ այդ գիշերը նույնպես շատ շաղգամ են տարել և սկսում են սատանային նախատել: Սատանան նրանց բացատրում, համոզում է, որ քունը տարել է, մի փոքր ննջել, հենց այդ ժամանակ էլ գողը մտել ու ավերել է բոստանը:



Հաջորդ գիշերը հերթապահելու է գնում Պերկունասը: Բայց նրա բախտն էլ չի բերում. գողը նրան այն օրի է գցում, որ խեղճը հազիվ է կենդանի տուն հասնում:

Առավոտյան հյուսնը ստուգում է դաշտը և տեսնում է, որ շատ շաղգամ է գողացված: Նա սկսում է նախատել Պերկունասին: Իսկ Պերկունասն ասում է.

— Դեռ երեկվանից իմ ատամը ցավում էր, երբ ցավը մի փոքր անցավ մոտ մեկ ժամ ննջեցի: Հենց այդ պահին էլ գողը մտել է բոստանը:

Երրորդ գիշեր շաղգամի բոստանում գնում է հերթապահելու հյուսնը: Նա իր հետ վերցնում է ջութակը, նստում բոստանի մոտ գտնվող քարին և ընկրսում ճզճզացնել:

Կեսգիշերին նկատում է, որ գողը գալիս է չըխկացնելով և ամբողջ կոկորդով մեկ գոռալով.—«Հեյհե՜յ, ես եմ, իմ սայլով, իմ երկաթե ցուպիկով»:

Հյուսնը չի վախենում և սկսում է նվագել ավելի աշխույժ, ավելի ուրախ: Գողը լսելով երաժշտությունը, դադարեցնում է մտրակով շրխկացնելը, և իջնում է սայլակից: Նա կանգնում է երաժշտին մոտիկ ու լուռ լսում: Հյուսնը տեսնում է, որ գողը մի կախարդվհուկ է: Այստեղ հասկանում է հյուսնը, թե ինչ է պատահել իր ընկերներին:

— Բարի երեկո,— փաղաքշանքով ասում է վհուկը: Ինձ դուր է գալիս ձեր երաժշտությունը: Բարի եղեք, տվեք ես էլ նվագեմ:

Հյուսնը ջութակը տալիս է նրան: Կախարդը մի քանի անգամ շուռումուռ է տալիս, փորձում, բայց ոչինչ չի ստացվում:

Կախարդը հյուսնին ասում է.

— Ինձ նվագել սովորեցրեք:

— Ինչ կա որ,— համաձայնում է հյուսնը:— Սովորելը դժվար գործ չէ, միայն թե սկզբից հարկավոր է ձեր հաստ մատները բարակեցնել:

Վհուկը համաձայնում է: Հյուսնը բերում է կացինը, ընտրում մի մեծ կոճղ, այն ճեղքում և մի սեպ խրում արանքում: Հենց որ վհուկը ձեռքը մտցնում է ճեղքի մեջ, հյուսնը սեպը արագ հանում է, և կոճղի արանքում սեղմվում են գողի մատները: Շատ է խնդրում վհուկը, որ հյուսնը բաց թողնի իրեն, բայց նա բերում է մետաղալարե խարազանը և սկսում է լայնքից ու երկայնքից վհուկին մի լավ ծեծել և միայն դրանից հետո է բաց թողնում: Վհուկն իսկույն անհետանում է՝ մոռանալով իր խարազանն ու սայլակը:

Առավոտյան սատանան ու Պերկունասը գալիս են շաղգամը նայելու: Գալիս ու տեսնում են, որ ոչ մի շաղգամ չի գողացված: Իսկ հյուսնը իր ընկերներին ասում է.

— Զևացնում էիք, որ ուժեղ եք, քաջ եք, բայց վհուկը ձեզ համ խաբեց, համ էլ մի լավ քոթակեց: Իսկ ես նրան այնպիսի դաս տվեցի, որ այլևս գողությամբ չի զբաղվի:

*Թարգմ. Ս. ԲԱԼԱՅԱՆ*




Հմուտ ձեռքեր

## ՆՐԱՆՑ ՀԱՄԱՐ, ՈՎՔԵՐ ՎԱՏ ԵՆ ԼՈՂՈՒՄ

Ձեզանից յուրաքանչյուրը, հավանորեն, ունի փոքրիկ եղբայր կամ քույր, ովքեր դեռ չեն իմանում լավ լողալ: Պատրաստեցեք նրանց համար այնպիսի գոտի, ինչպիսին տեսնում եք այս նկարում: Պատրաստելը դժվար չէ, երբ ձեր ձեռքի տակ է գծագիրը, իսկ նյութերի ձեռք բերումը ամեն մեկի համար էլ մատչելի է: Հարկավոր է ունենալ «Օլեոնոկ» կամ «Շկոլնիկ» հեծանիվի կամերա, մի կտոր պինդ գործվածք և ճարմանդավոր երկու փոկ (կաշեգոտի):



## ԳՐՊԱՆԻ ՀՈՎՀԱՐԻՉ

Ամռանը մարդիկ զով տեղ են փնտրում ստվերում, ջրերի մոտ: Իսկ ինչպե՞ս վարվեն նրանք, ովքեր ամբողջ օրը արևի տակ են անցկացնում: Այդ նպատակով կարելի է պատրաստել գրպանի հովհարիչ: Վերցրեք պլաստմասսե մի օճառաման, դրան ամրացրեք ДП-10 միկրոէլեկտրաշարժիչ, կոճակավոր անջատիչ և գրպանի լապտերի մարտկոց: Պտուտակ-պրոպելլերը հեշտությամբ կարող եք ինքներդ պատրաստել թիթեղի կտորից: Հովհարիչի սխեման դուք տեսնում եք նկարում:



## ՀԱՎԱՔՎՈՂ ՇԱՍՍԻ

Հավաքվող շասսիի (հենասարք) լավ գործող սխեմա ընտրելը բարդ բան է, չէ՞ որ նրանք աշխատում են դժվարին պայմաններում ու կրում են բազմաթիվ հարվածներ ու տատանումներ: Շասսիի նորմալ աշխատանքի խանգարումից կարող է նաև մոդելը ջարդվել: Ինչպե՞ս խույս տալ դրանից: Առաջարկներ շատ կան: Ահա սանձապարանով մոդելի շասսիի արձակման ու հավաքման սխեմաներից մեկը: Հավաքվող շասսին զգալիորեն բարելավում է մոդելի աէրոդինամիկ հատկությունը և նրա կոնստրուկցիան մոտեցնում սավառնակի կոնստրուկցիային: Իսկ այս կոնստրուկցիան հետաքրքրական է, բայց կատարյալ չէ: Պատանի տեխնիկներ, մտածեք դրա կատարելագործման մասին և առաջարկները ուղարկեք «Պիոներ» ամսագրի խմբագրություն:



## ՈՐՊԵՍԶԻ ՇԱՐԺԻՉԸ ՀԶՈՐ ԼԻՆԻ

*Երևի դուք էլ ձեր մոդելների վրա դնում եք գործարանային էլեկտրաշարժիչներ ու երբեմն էլ տրտնջում այն բանից, որ դրանց հզորությունը փոքր է: Ուրեմն ի՞նչ կարելի է անել: Վերցրեք երկու հատ հասարակ էլեկտրաշարժիչ: Զգուշորեն հանեք հետևի խոզանակավոր պատերը: Հանեցեք նաև էլեկտրաշարժիչներից մեկի առջևի կափարիչը: Էլեկտրաշարժիչները կպցրեք БФ-2 սոսինձով կամ նիտրոսոսինձով այնպես, ինչպես ցույց է տրված նկարում: Խարսխիկը պատրաստեցեք 2 միլիմետր տրամաչափի ճաղից: Վրան հագցրեք երկու էլեկտրաշարժիչների խարիսխներից հանած բոլոր թիթեղիկները ու ավելացրեք ևս 6-7 նման թիթեղիկներ՝ կտրված տրանսֆորմատորային թիթեղից: Ճաղի վրա թիթեղիկների երկու կողմերից սավարաթղթե միջադիրներ հագցրեք ու դրանք սեղմեք պլաստմասսե անուրով: Թիթեղաշերտի վրա փաթաթեք ПЭЛ կամ ПЭВ 0,25—0,3 միլիմետրանոց լար, երկու անգամ ավելի շատ, քան սովորական էլեկտրաշարժիչների կոճի վրա է լինում:*



# ԿՈՇԻԿՆԵՐԸ

Կոշիկները սկիզբ են առել շատ վաղուց, մեր թվագրությունից հարյուրամյակներ առաջ: Նրանց սկզբնական ձևը ներբաններն էին, որի նպատակն էր մարդու ոտքերը պաշտպանել ցրտից, քարերից և քերծվածքներից: Այդ նպատակով ոտքի տակին կարում էին կաշի կամ ծառի ճկուն կեղև, որտեղից և առաջացան սանդալները, որոնք հետագայում մեծ տարածում և ընդունելություն գտան:

Հին Հունաստանում հագնում էին կաշվե ներբաններով և ոտքի շուրջը շերտավոր փաթաթվող, երկար փոկավոր սանդալներ: Սանդալներ էին հագնում նույնիսկ օլիմպիական աստվածները: Ամենաչքնաղ աստվածուհու՝ Հերմեսի սանդալները ոչ միայն կապեր ունեին, այլև թևեր:

Հռոմեացիները հույների նման սանդալներ էին հագնում, բայց միայն տանը, իսկ փողոցում նրանք հագնում էին այսպես կոչված ցալցեյներ, դրանք կիսաերկարաճիտ, կապիչներով կոշիկի նման մի բան էին, իսկ ձի նստելիս հագնում էին ավելի երկարաճիտ կոշիկներ, առանց կապիչների, որոնք պերո էին կոչվում: Պերոները պատրաստում էին չդաբաղած կաշվից, իսկ գուլպա կամ կիսագուլպա չէին հագնում, կոշիկը հագնում էին ուղղակի բոբիկ ոտքին:

Հետագայում, միջնադարում երկարաճիտ կոշիկների տակից սկսեցին հագնել կարճ գուլպաներ, իսկ 15-րդ դարում մեծ տարածում գտան ամբողջ Եվրոպայում կրակովյան կոշիկները՝ այսպես կոչված «կրակովես»-ները: Ինչպես ցույց է տալիս անունը, դրանք առաջացել են Կրակով քաղաքում, որը տղամարդու կոշիկի նորաձևության կենտրոնն էր համարվում:

«Կրակովես»-ները խիստ բնորոշ տեսք ունեին, նրանց քթերը շատ երկար էին, այնպես որ ետ էին ծալվում ոտքի երեսին, իսկ երբեմն էլ այնքան երկար, որ շղթայիկով ամրացնում էին գուլպաների կապիչներին, բացի դրանից նրանք, ինչպես և վարտիքները, լինում էին տարբեր գույնի: Այնուհետև 16-րդ դարում առաջ եկան սաղր կոշիկները, քառակուսի քթերով ի հակադրություն՝ շղթայիկով ամրացվող, խիստ երկարաքիթ կոշիկների, ապա առաջ եկան բարձրակրունկները: Այս վերջին նորաձևությունը մտցրեց ֆրանսիական Լյուդովիկոս 14-րդ թագավորը, որը ցածրահասակ էր: Այսպիսի կոշիկները կարում էին փափուկ ու թանկարժեք կաշվից կամ թավշից, զարդարում էին ձեռագործով կամ մետաղյա փայլուն ճարմանդներով: Բացի սովորական կրունկներից, պատրաստում էին նաև քառակուսի կրունկներով կոշիկներ, որոնց կրունկներին ամրացնում էին խթաններ: Պարզ է, որ այդպիսի կոշիկներ հագնում էին միայն հարուստները, այստեղից էլ առաջացել է «մարդուն կոշիկով ճանաչիր» դարձվածքը:

18-րդ դարի վերջում փոքրինչ փոփոխված, քառակուսի կրունկներով կոշիկները սկսեցին հագնել ձիարշավների և զբոսանքի ժամանակ: Ավելի ուշ ճիտքերը կարճացրին և հաճախ առջևից թելագնդիկներ էին կա-

# ՀԻՆԳՀԱՐԿԱՆԻ ԼԻՃ

*Ամբողջ աշխարհում այս լիճը չունի իր նմանը: Ջուրը բաղկացած է հինգ շերտից: Լճի հատակը ծածկված է մածուցիկ տիղմով: Ջրի ստորին շերտը հագեցած է ծծմբաջրածնով, որը ոչնչացնում է ամեն մի կենդանի կյանք: Երկրորդ «հարկը» խիտ բնակեցված է ծիրանագույն մանրէներով, որոնք օքսիդացնում են վեր բարձրացող ծծմբաջրածինը: Այս կործանարար գազի ոչ մի մոլեկուլ չի կարող թափանցել երրորդ «հարկ», որտեղ ապրում են ծղկներ, ծովաոզնիներ, ակտինիաներ, ծովաստղեր: Չորրորդ «հարկի» ջուրը մի քիչ աղի է և կենդանական աշխարհի համար պիտանի չէ: Իսկ ամենավերին «հարկի» ջուրը քաղցրահամ է, վճիտ, աղբյուրի մաքուր ջուր:*

*Թե ինչպես են առաջացել այդ տարօրինակ լճի «հարկերը» և թե ինչու ջրի շերտերը երբեք իրար չեն խառնվում, մինչև հիմա պարզված չէ: Լիճը գտնվում է Բարենցի ծովի Կիլդին կղզում:*



# ԱՎԱՆԱԿ-ՄՈՏՆԱՁԱՓԻԿԸ

Սովորաբար ավանակները են պայուսակներ ու զամբյուղներ կրում, իսկ այս ավանակն ին-

քըն է նստել պայուսակի մեջ: Գուցե կարծում եք, թե նորածին ավանա՞կ է: Ոչ: Այդպիսի լիլիպուտ-ավանակների նոր տեսակ է ստացել անգլիացի Ռոն Բրեները, որպեսզի երեխաները զվարճանան նրանցով:

## ԱՄԵՆԱԲԱՐՁՐԱՀԱՍԱԿ ՄԱՐԴԸ

*Վերջերս աֆրիկյան լրագրերից մեկում հաղորդագրություն տպագրվեց այն մասին, որ Տըրանսվալում ապրում է մի մարդ, որի բարձրությունը հավասար է 2 մետր 70 սանտիմետրի: Նրա անունն է Ջոն Կամուլյանգա:*

*Բարձր հասակի պատճառով Կամուլյանգան ոչ կարողանում է տեղավորվել մարդատար ավտոմեքենայում, ոչ էլ հեծանիվ կամ մոտոցիկլ նստել:*





խում, որպես զարդ, այսպիսի կոշիկները լինում էին բազմագույն, այսինքն ամեն գույնի, բայց գերիշխող գույնը կարմիրը ու սևն էին:

19-րդ դարում կոշիկները կորցնում են բոլոր տեսակի զարդերը և կրունկները նույնպես. մնում են միայն սև կոշիկները, իսկ դարի վերջում՝ դարչնագույնը:

20-րդ դարը արմատական փոփոխություն չի մտցնում տղամարդու կոշիկների նորաձևության մեջ, պահվում է սևը և դարչնագույնը, ավելի սակավ են դառնում երկարաճիտ կոշիկները: Դրա փոխարեն լայն տարածում են գտնում թեթև կոշիկները, իսկ 20-րդ դարի 2-րդ կեսում կրկին սկսում են իշխել սանդալները:

*ԱՐԵՎԻԿ ՇԱՎՈՅԱՆ*

# ՄԵՐ ՀԱՐՑԱԹԵՐԹԻԿԸ

*Սիրելի ընթերցող, «Պիոները» լույս է տեսնում քեզ համար, և խմբագրությունը հետաքրքրում է քո կարծիքը ամսագրում տպագրվող նյութերի ու նկարազարդումների վերաբերյալ: Մենք, իհարկե, բազմաթիվ նամակներ ենք ստանում մեր ընթերցողներից, որոնք գրում են այդ մասին, բայց այս անգամ ուզեցինք իմանալ բոլորի կարծիքը: Մի՛ ուշացրու, ամսագրից կտրիր այս հարցաթերթիկը, ուշադիր կարդա, լրացրու և ուղարկիր հետևյալ հասցեով. Երևան—15, Կարմիր բանակի փ. № 41, «Պիոներ» ամսագրի խմբագրություն, «Ինչուկ» ակումբին:*

*1. Ինչպե՞ս ես կարդում «Պիոները»*

*ա) կարդում ես հերթականությա՞մբ (այո, ոչ)*

______________________________

*բ) առաջ փոքրածավալ գործե՞րն ես կարդում, թե՞ մեծածավալները* ______________

______________________________

*գ) սկզբում գեղարվեստական գործե՞րն ես կարդում, թե՞ «Ինչուկ» բաժնի հետաքրքրաշարժ տեղեկությունները ու գիտական զրույցները: Գուցե առաջ լուծում ես ժամանցային առաջարկնե՞րը*

______________________________

______________________________

*2. 1967 թ. լույս տեսած համարներում ո՞ր պատմվածքներն են ավելի շատ դուր եկել քեզ (նշիր մինչև երեք պատմվածքի անուն)* ______________

______________________________

______________________________

______________________________

______________________________

______________________________

*3. Իսկ բանաստեղծություննե՞րից* ______________

______________________________

______________________________

______________________________

*4. Ո՞ր համարի շապիկն ես հավանում* ______________

______________________________

*5. Իսկ ի՞նչը քեզ դուր չի եկել (պատմվածք, բանաստեղծություն, նկար և այլն)* ______________

______________________________

______________________________

______________________________

______________________________

______________________________

6. Ո՞ր նյութերի ընթերցանությունն ես կխստ թողել անհետաքրքիր լինելու պատճառով___

7. Ինչ կարգի նյութեր ես սիրում կարդալ (պատմվածք, բանաստեղծություն, հեքիաթ, հետաքրքրաշարժ տեղեկություններ գիտության ու տեխնիկայի աշխարհից և այլն)___

8. Լա՞վ է, երբ ամսագրում շարունակաբար վիպակներ ու հեքիաթներ են տպագրվում (այո կամ ոչ)___

9. Ձեր դասարանից քանի՞ հոգի են «Պիոներ» ստանում ___

10. Մտադի՞ր ես «Պիոներ» ստանալ ու ընթերցել նաև 1968 թվականին (եթե ոչ՝ ինչու)___

11. Ինչի՞ մասին ավելի շատ կուզենայիր կարդալ «Պիոներում» 1968 թվականին։ Ի՞նչ առաջարկներ ունես ___

12. Քո հասցեն, անունը, ազգանունը, հայրանունը, դպրոցը, դասարանը, ծննդյան թիվը, ամիսը և ամսաթիվը___

Հարցաթերթիկին կարող են պատասխանել նաև մեծահասակները։

Պատանի ընթերցող, քո, ինչպես նաև մեծերի կարծիքները կօգնեն, որպեսզի ամսագիրը 1968 թ. լինի ավելի հետաքրքիր ու գրավիչ։

Սպասում ենք քո նամակին։

Լույս է տեսնում 1923 թվականից



# ՊԻՈՆԵՐ

8 օգոստոս 1967

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝

նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

Գլխավոր խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝

ԱՐՋՈՒՄԱՆՅԱՆ Ռ., ԲԱՐԱԽԱՆՅԱՆ Վ., ԽՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Գ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղարվեստական խմբագիր)

„Пионер“ на армянском языке. Адрес редакции: Ереван. ул. Кармир банаки, № 41.

Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—68—16, 2—59—06։

ՎՖ 08508։ Պատվեր՝ 1100։ Տպաքանակ՝ 42000։ Տպագրական 3 մամուլ։ Ստորագրված է տպագրության 23/VIII 1967 թ.։ ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան փ. № 91։

Գինը՝ 10 կ.

## ԵՐԿՈՒ ԿՌՈՒՆԿ

*(ճիշտ լուծման համար՝ 10 միավոր)*

Երկու կռունկ վիճեցին, թե իրենցից որ մեկը շուտ կշրջանցի լիճը՝ երկու քայլ առաջ և մեկ քայլ ետ կամ մեկ քայլ առաջ, երկու քայլ ետ անելով: Նրանք եղեգների մոտից սկսեցին քայլել լճի եր-



կայնքով: Ինչպես տեսնում եք, նրանցից մեկը առաջ է շարժվում, իսկ մյուսը՝ ետ:

Փորձեցեք իմանալ, թե նրանցից որ մեկը շուտ կհասնի վերջնագծին և քանի քայլով առաջ կընկնի մյուսից:

## ԸՆԿԵՐՈՒՀԻՆԵՐԸ

*(ճիշտ լուծման համար՝ 8 միավոր)*

*Գոհար և Զվարթ Սարգսյանները, ինչպես նաև նրանց համադասարանցի Գոհար Սաֆարյանը անբաժանելի ընկերուհիներ են և դպրոցի լավագույն մարզիկները: Դպրոցում գործում է սպորտի 3 խմբակ՝ մարմնամարզության, լողի, դահուկի, բայց նրանցից յուրաքանչյուրը զբաղվում է սպորտի 2 ձևով: Երկուսը ընդգրկված են նաև դպրոցի երգի-պարի անսամբլում, իսկ երրորդը՝ շախմատի սիրահար է:*

## ՀԱՆԳՍՏԻ ԺԱՄԻՆ

*Ահա էլի մի քանի մանրամասնություններ մեր երեք ընկերուհիների կյանքից:*

*1. Լողի մրցման ժամանակ Սարգսյան քույրերից մեկը գրավեց առաջին տեղը, ընդամենը 0,2 վայրկյան Գոհարից շուտ հասնելով վերջնագծին:*

*2. Դահուկային մրցավազքին Գոհարը ներկա չէր, որովհետև մասնակցում էր շախմատի քաղաքային մրցումներին: 3. Տոնական համերգի ժամանակ աչքի ընկած գեղեցիկ պարի համար Սարգսյանի և Սաֆարյանի լուսանկարները տեղ էին գտել դպրոցի պատի թերթում: 4. Զվարթը և Գոհարը միանման դահուկային համազգեստ ունեն:*

*Մնում է որոշել, թե ընկերուհիներից յուրաքանչյուրը սպորտի ո՞ր ձևով է պարապում:*

## ԱՂԱՎԱՂՎԱԾ ՊԱՏԿԵՐ

*(ճիշտ լուծման համար՝ 5 միավոր)*

Մեր լայնէկրան հեռուստացույցով պատկերը աղավաղված է: Որոշեցեք, թե որ ոտքերը ում են պատկանում:




## Պատասխանում ենք

### «ՊԻՈՆԵՐ» №, № 5, 6

*«ՏԻԵԶԵՐՔ» — 1. Լաստենի. 2. Յուպիտեր. 3. Գեներալ. 4. Արիզոնա. 5. Սենեգալ. 6. Ավարայր. 7. Բալատոն. 8. Տուրգենև. 9. Գրինվիչ. 10. «Քաջարան». 11. Վրոցլավ. 12. Ուրուգվայ. 13. Արտաշես. 14. Պինգվին. 15. Տապաժոս. 16. Մոնրեալ. 17. Նիկիտին. 18. Տյան-Շան, կենտրոնական վանդակաշարում՝ տիեզերագնաց Գագարին.*

*«ԽԱՉԲԱՌ-ԲԱՌԱՇՂԹԱ» — 1. Գորոդկի. 2. Իրտիշ. 3. Շիրակացի. 4. Իտալիա. 5. «Ավանգարդ». 6. Դրեզդեն. 7. Նատալիա. 8. Ալմաատա. 9. Տայվան. 10. Նալբանդյան. 11. Նանկին. 12. Նամակ. 13. Կոզան. 14. Նովակ. 15. Կրակ.*

*«ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ». Ընկեզչյուր. Խխունջ.*

*«ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ՊԱՏԿԵՐՆԵՐ» — 1. Պինգվինն ու սպիտակ արջը բնական պայմաններում միասին չեն լինում. Պինգվինն ապրում է հարավային բևեռում, սպիտակ արջը՝ հյուսիսային. 2. Էյֆելյան աշտարակը Վենետիկում չի գտնըվում, այլ՝ Փարիզում. 3. Եգիպտոսում վագր չի լինում. 4. Սահարայում կեչի չի լինում, իսկ արմավենու մոտ կեչի է նկարված.*

*«ԽԱՉԲԱՌ-ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ» — 1. Եղյամ. 2. Զղջիկ. 3. Նամակ. 4. Տակառ. 5. Անձրև. 6. Գնդակ. 7. Քլունգ. 8. Խլուրդ. 9. Գնացք. 10. Անուն. 11. Աղյուս. 12. Սղոց. 13. Սեղան. 14. Մեղու. 15. Մողես. 16. Սոխակ. 17. Թագիր. 18. Մազեր.*

# ՀՈԲԵԼՅԱՆԱԿԱՆ ՀԱՎԱՔԸ



Հավաքի դրոշակը բարձրացված է...




«Ավրորան» Լենինի հրապարակում



Պիոներների շքերթը Վ. Ի. ԼԵՆԻՆԻ անվան հրապարակում



Սպիտակի շրջանի պատգամավորների մեջ էր նաև
ՀՐԱՉՈՒՀԻ ՍԱՀԱԿՅԱՆԸ



Ծփում են դրոշակները...